Հրատար. Գիւտ. ք. Աղանեանցի

№ 7

# ԿԻԼԻԿԻԱ

ԳՐԵՑ ԲԱԿ.

(Արտատպած „Լումայ“ գրական հանդէսից).



ԹԻՖԼԻՍ

Տպ. Մ. Շարաձէի, Նէվ., 21.

1896

## ԳԻՒՏ ՔԱՀ. ԱՂԱՆԵԱՆՑԻ

### Ա. Աշխատութիւնները.

Աղօթատետր. բ. տպ. 1889 . . . . . . . — 10

Կրօնի դասագիրք ա. տ. 1889 (սպառուած.) . — 15

" բ. տ. Դ. տպ. 1891 . . . . . . — 25

" գ. տ. Գ. " 1890 . . . . . . — 25

Տօմար եւ տօնացոյց Հայաստ. ս. եկեղեցւոյ բ. տպ. 1894 . . . . . . . . . . . . — 50

Կարնոյ գաղթը. պատմ. տեսութիւն, 1891 . — 10

Դիւան Հայոց պատմ.. գիրք Ա.-Բ. 1780—1834 Սահ.-Մեսրոպ. մրցանակին արժանացած 1893 . . . . . . . . . . . . . 2 —

Դիւան Հայոց պատմութեան. գիրք Գ, Սիմէոն կաթողիկոսի յիշատակարանը. կենսագրութեամբ, յաւելուածներով ու ծանօթութիւններով. Սահակ-Մեսրովպ. մրցանակին արժանացած, 1894 . . . . . . . . . . 7 —

Կարգ Աստուածպաշտութեան Հայաստանեայց ս. եկեղեցւոյ բ. տպ. 1895 . . . . . . . — 40

Պատի օրացոյց ժամանակագր. Ը. տարի, 1896. — 60

### Բ. Թարգմանութիւնները.

Հաւատարմութիւնն ամէն արգելքների յաղթում է. Փ. Հոֆմանի. 1877 . . . . — 40

Խաւարից դէպի լոյս. Փ. Հոֆմանի. 1877. . — 40

Դօն Քիշօտ լամանշեցի Մ. Սէրվանտէսի 1878 (սպառուած) . . . . . . . . . . . — 70

Գէորգ Ռօլլէստօն, վէպ 1879 . . . . . — 60

*Հրատարակութիւն Գիւտ. քահ. Աղանեանցի*
№ 7

# ԿԻԼԻԿԻԱ

**ԳՐԵՑ ԲԱԿ.**

*(Արտատպած „Լումայ" գրական հանդիսից).*



**ԹԻՖԼԻՍ**
Տպարան Մ. Շարաձէի, Նիկ., 21.
**1896**

# ԿԻԼԻԿԻԱ

## Ա.

*Աշխարհագրական դիրք. — Հին եւ նոր Կիլիկիա. — Բնակչական կազմութիւնը. — Լեռնային քաղքեր. — Կրօն. — Վ. Լանկլուայի տպաւորութիւնը:*

—

Կիլիկիայի վրայ ամեն կողմէ սեւեռուած ուշադրութիւնը հետաքրքրական է։ Ազգային և Եւրոպացի հետազօտողներ հիացումով դիտած են և կ'դիտեն այդ երկրին անցեալ փառքերն ու արդի աւերակները։ Թէ գիտական և թէ ժողովրդական աշխատութիւններ, լրագրական յօդուածներ ծանօթացուցին Կիլիկիան։

Ես կ'փութամ, որչափ կարելի է, ընդհանուր տեսութիւններով ծանօթացնել Կիլիկիան «ԼՈՒՄԱՅ»Ի ընթերցողներուն։

Կիլիկիա երկրագնդի այն գծերէն է, և թերևս ըստ ինքեան միակ գիծը, որու վրայ

դարեր իրարու հետքերը ջնջելու համար ամենէն հետաքրքրական երևոյթներ յառաջ բերած են։

Միջերկրականի հիւսիսային եզերքը դէպի Արևելք՝ Եփրատ, երկայնութեան $29^{0}$ էն $35^{0}$ (փոփոխուն) և լայնութեան $36^{0}$ էն $38^{0}$ աստիճաններուն վրայ (հաստատուն) կ'դաշտանայ և կ'լեռնանայ երկիր մը. ա՛յն տեղ ծովեզերքը Տարսոնի շրջականերէն մինչև Ամանոսի քղանցքը անծիր դաշտ մ'է կարծես բլրակներով հազիւ խոյտ ու փորտուած. իսկ այս ընդարձակութեան վրայ տիրող անտառուտ և ձիւնապսակ լեռներու ա՛յն հսկայ գօտին՝ Տաւրոսը, որ պատմական նշանաւոր դէպքերու կռուան ընծայած է, ցլային նիստով մը կ'երկննայ մինչև Պարսկաստան։ Ա՛յս է պատճառն որ այդ երկիրն սկիզբէն ի վեր նկարագրուած է *Դաշտային Կիլիկիա* և *Ապառաժ Կիլիկիա* կամ *Գահ Կիլիկիոյ* անուններով։

Կիլիկիան երկու գլխաւոր դիմայեղումի (phase) մէջ կարելի է նկատել պատմականապէս.

1. *Հին Կիլիկիա*.—Կիլիկիա իբր ծովեզրեայ երկիր մը՝ ծանօթ հին աշխարհի քաղաքակրթութեան նշանաւորներուն հետ շփուեցաւ։ Ասորեստան, Պարսկաստան, Եգիպտոս, Հռովմ կ'մրցէին զայն գրաւելու համար։ Ամենէն փայլուն ժամանակամիջոցն է Աղէքսանդ-

րեան տիրապետութիւնը. Հելլենականութիւնը ոչ միայն ծաղկեցաւ Կիլիկիայում Աթէնքի և Աղէքսանդրիայի հետ մրցելու չափ զարգացած կեդրոններով, այլ մանաւանդ Կիլիկիայի լեռնադուռները կամ կապանները մուտք տուին հելլենականութեան դէպի Արևելք յառաջանալու։ Իսոսի ճակատամարտը Ամանոսեան կիրճերում՝ այդ պատմական նշանաւոր դէպքին թուականն է (Ն. Ք. 333 Նոյ. 29)։

Թէ Սելևկեան իշխանութեան ժամանակ և թէ յետոյ հռովմէական տիրապետութեան ժամանակ ալ Կիլիկիայի մտաւոր բարգաւաճումը մնաց իւր նախանձելի վիճակին մէջ, այնպէս որ Տարսոն՝ Կիլիկիայի Աթէնքը՝ հռովմէական ազատ քաղաքացիութեան իրաւունքով օժտուեցաւ։

Ասոնց ամենուն վրայ կանխել պէտք է տալ այն ընդարձակ պետութեան քաղաքակըրթութիւնը, որ անշուշտ մեծ դեր ունեցաւ Կիլիկիայի հին կեանքին մէջ։ Քետական քաղաքակրթութիւնն է այդ, որ նորադոյն պեղումներով դուրս կուգայ հողաբլուրներու տակէն։ Հայոց'լեռան (Կեավուր տաղը կամ Ճէպէլի պէրէքէթ) արևելեան քղանցքը, լաւ ևս Կեավուր և Քիւրտ լեռներու մէջ հարաւէն հիւսիս հովիտ մը կ'պարզուի վատառողջ, հազիւ մշա-

կելլի եղած այժմ չէրքէզներու ջանքով. քետացիներու ծաղկած երկիրներէն մին էր այդ, որու քաղաքակրթական գրաւականները ծածկուած են *Քէլլէր* գիւղի մօտ *Զէնճիրլի* անուն տեղը, հողաբլուր մը. և դեռ ո՜ գիտէ ինչ հողաբլուրներ։ Զէնճիրլիի պեղումը, որուն լայն խրամները ես անձամբ տեսայ 1893-ին, ընտիր հարթաքանդակներ ի լոյս հանած է։ Քետական հնութիւններ գտնուեցան նաև Կիլիկիայի զանազան կէտերում, Մարաշի մէջ և Մարաշի ու Այնթապի շրջակայ գիւղերու մօտերը, որք կըցուցնեն թէ ինչչափ ծաւալուն եղած է Կիլիկիայի ամենէն հին կեանքը [1])։

2. *Նոր Կիլիկիա*.—Մեր պատմութեան համար Կիլիկիայի հետաքրքրական ժամանակամիջոցը կ'բացուի մետասաներորդ դարու ճիշդ կիսուն, երբ արդէն Կիլիկիա մնացած հին քաղաքակրթութեան աւերակներու ներքև ալ Բիւզանդական կայսրութեան բաղդին կապուած օտար տարրերու կեդրոն մը կ'դառնար։

---

[1]) Քետացիներու վրայ ուսումնասիրութիւն մը հրատարակեց A. H. Sayse զոր Ioachim Menant ֆրանսացի ակադեմականը ֆրանսերէնի թարգմանել տուաւ իւր կողմէն կցելով յառաջաբան մը և յաւելուած մը. Les Hétéens Histoire d'un Empire oublié, Paris, Ernest Lerout Editeur 1891.

Հայոց մուտքը Տաւրոսի անմատչելի ամուրներու մէջ՝ Կիլիկիայի պատմութեան համար նոր նոր և կարևոր դէպքեր ստեղծեց։ Հին Կիլիկիա մեր վերը նշանակածէն աւելի ամփոփ աշխարհագրական աստիճաններու վրայ քաղաքակրթիչ մղումով մը կ'զարգանար, թէև լեռնցիներ—թէ Տաւրոսի և թէ Ամանոսի վրայ իրենց նկարագրին հաւատարիմ կ'մնային դաշտեցիներու յառաջդիմութեան հանդէպ։ Նոր Կիլիկիա աւելի սահմաններ ընդարձակեց նախ դէպ ի Արևմուտք և յետոյ դէպ ի Արևելք՝ Եփրատ, ընդգրկելով եփրատացիներն ալ, ինչպէս այժմ։

Նոր Կիլիկիան շունչ չառաւ տևական տիրապետութեան մը ներքև կամ շատ զօրաւոր տարրի մ'ազդեցութիւնով որ կարենար հինին չափ հռչակ հանել քաղաքակրթութեան տեսակէտով։ Բայց և այնպէս յատուկ նկարագիր մ'ունի Նոր Կիլիկիան ալ՝ իբր կեդրոն մը ներքին և արտաքին կռիւներու. կռիւներ՝ որոց մէջ բարձրացաւ հարստութիւն մը և կրցաւ երկար ժամանակ փայլիլ աստղի մը պէս շողշողուն յատուկ դրութեան մը պայմաններով։

Հին Կիլիկիայի բնակչութիւնը խառնակ չէ եղած այնչափ՝ որչափ Նորինը։ Տիրող պետութիւններ անշուշտ իրենց դաղութները հաստա-

տեցին հին Կիլիկիայի մէջ. բայց միայն գաղութ։ Ասոնց ամենէն զօրաւորն եղաւ հելլենականը. արդի յոյները (ռում) Կիլիկիայի ծովեզերքին վրայ հազիւ կրնան յիշեցնել ոչ թէ հելլենականը՝ հինը, այլ՝ բիւզանդական տիրապետութեան ամենէն յետին մնացորդը։

Հետզհետէ Կիլիկիայի տարբեր ազգերէ գաղթական — բնակիչները տեղական պայմաններու մէջ իրենց նկարագիրները այլասեռեցին. ասոնց իրարու հետ շփումը տարբեր բարք մը պիտի ստեղծէր, և Նոր Կիլիկիայի բարացուցականն է այդ։ Երկիրը դրաւելու դիտումով յարձակողներ կամ ասպատակողներ ոչ թէ զիրար վռնտեցին, ինչպէս յառաջ, այլ՝ խտացան վանական կեդրոններում. այսպէս յառաջ եկաւ բազմատարր բնակչութիւն մը։

Մետասաներորդ դարուն մէջ Արևմուտք և Արևելք իրենց բոլոր ուժով Փոքր-Ասիայի բաղդը կ'վճռէին. Կիլիկիա իբր մէկ մասն այդ երկրին միևնոյն վիճակի մէջ կ'գտնուէր։ Սառակինոսներու, եգիպտացիներու, յոյներու կռիւներուն կեդրոն էր դարձել Կիլիկիան, երբ հայերն ու թիւրքմէններ ոտք կ'գնէին Տաւրոսի բարձունքներու վրայ։ Դէպ ի Փոքր-Ասիա Լանկ-թեմուրեան արշաւանքներու հետևանքով թաթարներուն մուտքն Կիլիկիա՝ հազիւ կարելի է օտար

հոսանքներու վերջ նկատել միջին դարում։ Ասիական բարձրաւանդակի գրեթէ բոլոր պատերազմիկ, լաւ ևս, աւազակ, թափառիկ, հովիւ ժողովուրդներն ու ազգերը և Եւրոպան թէ իւր բիւզանդականութիւնով և թէ խաչակիր բանակներով բնակչական տարօրինակութիւն մը բերին այդ երկրին, որու տնտեսական և մտաւորական զարգացումը շատ բնական համեմատութիւն մը պիտի պահէր այդ տարբեր ազգերու բնիկ նկարագիրներուն հետ. ոչ միայն իւրաքանչիւր ցեղ կամ ժողովուրդ իրենց բարքերը չպիտի փոխէին արմատապէս, այլ մանաւանդ ծովեզերքն ու լեռները պիտի պահէին իրենց բնականութիւնը մտքերու և բարքերու վրայ ալ։—Կիլիկիայի ամենէն վերջին օտար տարրն եղաւ չէրքեզներ, որ 1864-ին սփռեցան օսմանեան հողի զանազան կէտերուն վրայ։

Այժմ Կիլիկիա ունի հայ, յոյն, հրեայ, թուրք, թիւրքմէն, քիւրտ, արաբ (թէ մսլիման և թէ նուսայրի կամ նսայիրի ըսուած), չէրքէզ, բոշայ (չինկեանէ) և այլն ազգերէ խառնուրդ մը. ասոնց վրայ պէտք է աւելցնել ֆիրենկներ (փրանկ՝ այսինքն եւրոպացի) մանաւանդ ամերիկացիներ (միսիօնարներ), որ ոչ թէ իբր տեղացի, այլ տեղին մէջ իբր ծանրակշիռ դեր և դիրք ունեցող ոյժ մը։

Արդի Կիլիկիայում տիրող տարրը ոչ-քրիստոնեայն կամ Թիւրքը կ'նկատուի. բայց տարբեր և սակայն իրական տեսութեամբ մը քրիստոնեայ տարրը կամ հայն է Կիլիկիայի նշանակութիւն տուողը:

Այդ զանազան տոհմերու մէջ իրենց ցեղաբաժանումներով հետաքրքրական են Թիւրքմէնները, որ 20—22 ցեղ (tribu) կը հաշուուին, որոնց նշանաւորները մինչև վերջին տարիներ անմատչելի ըրին Տաւրոսը օսմանեան տիրապետութեան: Ասոնք ոչ միայն կռուող են իրենց անկախութեան համար, այլ մանաւանդ իրարու հետ:—Ասոնցմէ սա ցեղեր շատ նշանաւոր եղան. Րամազան կամ Րամատան օղլու, որ հայ Թագաւորներու դէմ կռուեցան, Խօղան օղլու, որ մինչև իրենց նուաճումը դաշնակցած էին Տաւրոսի հայերուն հետ, պօզան և Տայուլ ցեղերը, սարխանտ օղլու ցեղը, որ իրարու դէմ կռուեցան, և աֆշարներ՝ քիւրդ ցեղ մը՝ անոնց չափ նշանաւոր իբր կռուող և աւազակ, և այլն և այլն: Թիւրքմէններու այն մասը, որ կ'ձմեռեն Ատանայի դաշտում (Չուգուր օվա—ցած դաշտ) և ամառը հով կ'ելլեն, Ճիւրուկ (գընայուն, Թափառիկ) կ'կոչուին և ամենէն աւելի ծանօթ են բոլոր ճանապարհորդներուն:

Այս խառնուրդի մարդահամարը կարելի չէ

որոշել, ոչ միայն կանոնաւոր աշխարհագրի մը բացակայութեան շնորհիւ, այլ որովհետև եղածներն ալ շատ անճիշտ են։ Իսկ հայոց Թիւը Կիլիկիայի արդի Թէմերուն մէջ՝ Արարատ ամսագիրը (1895 յունուար էջ 46) նշանակած է 267.150 անձ։

Լեռնցիներու արդի կեանքը, մա՛նաւանդ կէս դար յառաջ, ուչ-քաղաքակիրթ ժողովուրդներու կեանքն է։ Անոնց յարաբերութիւններն իրարու հետ զէնքով կ'չափուի։ Առևանգումը սովորական բան մ'է ընտանեկան բարքերու մէջ։ Տնտեսական վիճակը աւազակային գործունէութենէն կախուած է. իրենց հօտերն ու նախիրները հազիւ կարտադրեն ամենէն անհրաժեշտ պէտքերը։ Հուղկահարութիւնը ցամաքի վրայ, ծովահենութիւնը ալիքներու վրայ Կիլիկիայի ամենէն հին և ամենէն բնական նկարագիրն էր։ Հին Կիլիկիա իւր ամենէն փայլուն քաղաքակրթութեան ժամանակամիջոցին մէջ ալ չկրցաւ զերծ մնալ աւազակային կեանքի հոսանքներէն։ Այժմ գրեթէ նոյն է թէև տարբեր ձևի մը տակ. արդի գայըգճըներու (մակուկավար), ընդհանրապէս արաբ, վարմունքը ուղևորներուն հետ եղանակաւորուած ծովահինութիւն մ'է. իսկ հուղկահարները դեռ իրենց վերջնական հա-

ջիւր չեն տուած ա՛յն լուծին, որուն ներքև գիւրաւ գլուխ չծռեցին։

Առտնին կենցաղը պարզ է և անբաւական, իրենց հագուստն ու կապուստը քաղաքներ կ՚պատրաստեն. քիւրդ *քէշիկ* (հարս, կին) մը չկրնար մկրատ ու ասեղ գործածել. բայց ներա մատները շատ ճկուն են կարպետներու և գորգերու հիւսուածքին մէջ։ Իրենց զարդարանքի (գլխաւորապէս արծաթեղէն) պերճանքը Ատանայի և Հալէպի *վիլայէթ*ներու գլխաւոր քաղաքներէն կ՚գնեն։ Այս կերպով շփումը բաւական օգտակար միջոց մ՚եղաւ անոնց բարքերն ընտանեցնելու։ Լեռնցին միշտ զինուած, ձին թամբըւած, քնանալու ժամանակ բարձին ներքևն է իւր ատրճանակն կամ հրացանը. ամեն վայրկեան գրեթէ վրէժխնդրութեան խնդիր մը պէտք է լուծուի գիւղէ գիւղ, ցեղէ ցեղ, *օպայէ օպա* (վրան, վրանախումբ)։

Ո՛չ միայն լեռներն են այս բնական վիճակի տևականութեան քաղաքակրթուած դիրքի մը հանդէպ, այլ մանաւանդ կրօնական զանազանութիւններն ալ։ Ամեն ցեղ իւր հաւատալիքը, իւր նախապաշարումը, իւր մոլեռանդութիւնն ունի։ Ո՛չ մի ձեռնարկ տիրապէս կարող է յաջողիլ քաղաքացիական ճշմարիտ կեան

մ'ընդհանրացնելու այս բազմատարր խառնուրդին մէջ։

Օսմանեան տիրապետութիւնը իւր կառավարչական կազմակերպութիւնով չկրցաւ նոր փայլ մը տալ այդ երկրին։ Սուլթաններու իշխանութիւնն, որ հազիւ 1840-ին տարածուեցաւ Տաւրոսի բարձունքներու վրայ՝ երբ Լոնտրայի դաշնադրութիւնն ստիպեց Իպրահիմ փաշան եգիպտական զօրքերն հանել, և վերջապէս 1864-ին, Զեթունի և Խօղան օղլուի նուաճումով, միայն ճնշում և անկում յառաջ բերաւ․ այնպէս որ Կիլիկիայի արդի վիճակը ներկայացնելու համար կարելի չէ կէտ մ'ալ փոխել այն տպաւորութիւններէն, զոր արձանագրեց Վիկտոր Լանկլուա հայագէտն իւր միամեայ հետազօտութիւններու միջոցին 1852—53։

«Եգիպտական բանակի պարպուելէն յետոյ, Ատանայի կուսակալութիւնը, որ կազմուած է հին դաշտային Կիլիկիայէն, դարձեալ մտաւ Օսմանեան Դրան իշխանութեան տակ, յանձնուեցաւ իւր գործակալներուն և ենթարկուեցաւ միևնոյն վարչական ձևին, որ կարծես հաստատուած է ցամքեցնելու համար բարեկեցութեան և կեանքի բոլոր աղբիւրները և ջնջելու ամենէն աննշան հետքերն երկրի հին քաղաքակրթութեան»։....

«Ասիայի այս այն պարտէզն է, զոր կ'շրջա-

պատեն Տաւրոսն ու ծովը և զոր Նախնիք Կիլիկիա անունով կ'ճանչէին, որ միջին դարում կորսնցուց ծաղիկներու պաճուճանքը և իւր վեհապանծ տեսքը փոխարկուելու համար պատերազմի դաշտի մը, որուն ստացումը Բիւզանդացիք և Հայք իրարմէ ուզեցին խլել, Եգիպտացիներ շատ անգամ աւերեցին զայն անգթօրէն, անխնայ, և որ, վերջապէս, Թիւրք տիրապետութեան Ներքև ընդարձակ անապատ մեղաւ, ուր Ճինկիզխանի և Թիմուրլէնկի յաղթական հրոսակներէն սերած Թուրքմէն և քուրդ ցեղեր աստ անդ կ'Թափառէին։

«Երբեմն այսչափ գեղեցիկ այս երկրին մէջ, այսօր մորենիներով և ժանտահոտ ճահիճներով ծածկուած, տենդը կ'տասանորդէ ժողովուրդ մը, որ ամեն տարի կ'նուազի և որ այդ պատուհասին բնութեան դէմ կ'դնէ միայն իւր անդարմանելի անհոգութիւնն, և վերջապէս պիտ' անհետանայ եթէ Եւրոպա չգայ օր մը տնկելու իւր քաղաքակրթիչ դրօշը ծեր Տաւրոսի ձիւնազարդ կատարներուն և Հին Կիլիկիայի աւերուած դաշտերուն վրայ։

«Տարի մը կեցայ այս երկրին մէջ ուր շընչուած օդը մահառիթ է, ամենէն գեղեցիկ պըտուղներ վնասակար են. և ջուրերը վատառողջ. ուր մարդը վերջապէս այնպիսի անկում մը

կրած է անդիտանալու և արհամարհելու չափ այն բարիքները, զոր Աստուած հաճած է աւելի իրեն շռայլել քան երկրագնդի ուրիշ ոևէ կէտի մը» (Ճմր. Կիլիկ. էջ 59 և 64—65)։

Հայագէտ հետազօտողին դիտողութիւնները հակառողջական տեսակէտով կ'վերաբերին դաշտային Կիլիկիայի. այդ ժամանակէն ի վեր (գրեթէ կէս դար) փոփոխութիւն մը չէ կրած դէպի լաւ. հակառակը բնական է։

## Բ.

*Ռուբինեանք եւ Կիլիկիա.— Կիլիկիայի յարաբերութիւնները Բիւզանդիոնի եւ Հռովմի հետ.— Կիլիկիայի քաղաքականութիւնը.— Հայոց եկեղեցին եւ Հայոց արդի վիճակը:*

—

Տաւրոսի պատմական յիշատակները ԺԱ դարու կէսէն յետոյ մեզ համար թանկագին են իբր մեր ազգային քաղաքական կեանքի դարաւոր տևականութիւնը։ Ռուբինեան հարստութեան աստիճանաւոր կազմակերպութիւնը իրարմէ այնքան տարբեր և զօրաւոր տարրներու մէջ և Կիլիկիայի գրաւումը Մեծն Լևոնի ձեռքով, որ իր անունով իսկ *Լեւոնի երկիր* կոչուե-

ցաւ, պատմական այն երևոյթներէն է, որ կ՚հիացնեն և մտածել կուտան։ Ռուբէն, հարստութեան տոհմապետը, հեռատես միտք մ՚էր, և իւր տեղաւորումը Կիլիկիայի մէջ բախտախնդրի ձեռնարկ մը չէր. Գագիկի վրէժը, այսինքն՝ ուրիշ փայլուն հարստութեան մը (Բագրատունի) եղերական փճացումը հիմն եղաւ Ռուբինեանին։ Եւ այս է պատճառն որ Կիլիկիա իբր Հայաստան մը, Փոքր կամ Միջին Հայաստան, Այրարատի և Մասիսի հին փառքերուն և հայու լարուած զգացումներուն կենդրոն մ՚եղաւ անցելումը և է նոյն իսկ այժմ։ Ռուբինեան իշխանութիւնն այնպիսի գագաթնակէտ մ՚ունեցաւ, զոր կարելի չէ մեր պատմութեան ուրիշ շրջանի մը մէջ մատնանիշ ընել։ Գաղտնիք մ՚է այդ որուն բունը կ՚կազմեն Տաւրոսեան ամուրներ և ասոնց հանգամանքը կշռող վարչական հանճարներ։

Կիլիկիայի նշանակութիւնը հայ բարքերու և ըմբռնումներու մէջ աւելի չօշափելի է։ Ծովեզրեայ երկիր մը ուրիշ արդիւնք չէր կարող ունենալ։ Արևելեան հայոց յարաբերութիւններն օտարներու հետ սկզբէն ի վեր իրենց բոլոր տաքութեանը մէջ չարտադրեց ինչ որ կ՚դիտենք Կիլիկեցիներու վրայ։ Եւրոպայի (Իտալիա, Սպանիա) և յետոյ Ճենովիզներու (Գենուա-

ցի), — որք վաճառականական դաշնագրութիւններ ալ կնքեցին Հայոց հետ —, շփումը՝ Կիլիկիան Արեւմուտքի կապեցին և խաչակրութիւնը ամենէն ընդարձակ միջոց մ'եղաւ Եւրոպայի այդ ժամանակամիջոցն ուսումնասիրելու թէ արքունիքի և թէ ժողովուրդի համար։ Պապը, որ կոնդակով մը բանակներ կրնար հանել այն ժամանակ, Հայ Դարպասի բարեկամ դարձաւ. Եւրոպական նորութիւններ մուտ գտան Ռուբինեանց արքունիքը, Եւրոպան յարգեց, պատուեց այս հարստութեան ներկայացուցիչներն և հայոց եկեղեցին իսկ ստիպուեցաւ նորութիւններ ընդօրինակել արքունիքի *խաթեր* համար։

Այստեղ կ'սկսի այն ծանրակշիռ խնդիրներուն պատմութիւնը, որք Հայոց եկեղեցիին շուրջ դարձան երբեմն և դեռ կ'դառնան պատմականօրէն։

Միանգամ ընդ միշտ պէտք է համոզուիլ որ Կիլիկեցի հայեր այլ և այլ ցեղերու մէջ ալիտ' ապրէին. անոնց հետ ամեն յարաբերութիւն բարեկամական պէտք էր ըլլալ. կեանքի ապահովութիւնը, կենցաղավարութեան պայմանները ուղղակի կ'պահանջեն այդ ամենը։ Ասոնց վրայ պէտք է աւելցնել թէ հայ արքունիք մը կար հայ եկեղեցիէն զատ. այս երկու նուիրապետութիւններն սակայն կապուած էին իրարու

հետ նոյն իսկ Լուսաւորչէն ի վեր։ Լուսաւորչի Աթոռը Թագաւորական իշխանութենէն շատ պաշտպանութիւն գտաւ. եկեղեցին ալ իր կողմէն անգործ չկեցաւ ի հարկին։ Կիլիկիայի մէջ եկեղեցին աւելի պէտք ունեցաւ իր պաշտպանութեան, լաւ ևս, իր օգնութեան շրջանակն ընդլայնելու։ Ասի բնական հետևանքն էր Արքունիքի յարաբերութիւններուն այնպիսի իշխանութիւններու հետ, որք շատ զօրաւոր էին իր շուրջը և կրօնական կամ եկեղեցական զօրաւոր նախապաշարումներ ունէին. կրօնը, եկեղեցին էր անոնց ոյժին կենդրոնը։ Այսպէս Բիւզանդական ձգտումները զբաղեցուցին հայ արքունիքին ու եկեղեցին Շնորհալիի և իր յաջորդներուն ժամանակ։ Լամբրոնացին, այդ անկեղծ եկեղեցականը, որ զուտ քրիստոնէական ոգիով կամ տեսակէտով յարած փարած էր խնդրին, ջերմ պաշտպան կանգնեցաւ Յունաց հետ միանալու գաղափարին։ Շնորհալին, որ գիտէր հոռոմներու ձգտումները, հայ արքունիքի դիրքըն և իր կողմէն սպասուած օգնութեան չափն ու եղանակը, ամեն զիջողութիւն ըրաւ Բիւզանդիոնի պահանջներուն հանդէպ, որ յաջողութիւն պիտ' ըլլար անշուշտ եթէ իր մահը չընդհատէր ամեն յարաբերութիւն։ Եկեղեցին կ'ընէր այս զիջումները հայոց Թագին պահ-

պանութեան համար. և Բիւզանդիոն իբր տիրապետող մը Կիլիկիայի ինչ ինչ կէտերուն այդ յարաբերութիւններու շնորհիւ բարեկամ մնաց Հայոց՝ քաղաքական խնդիրներում։

Բիւզանդիոնի տկարացումը պիտի յայտնէր գաղտնիքը. և իրաւի, երբ լատին ազդեցութիւնն սկսաւ զգացուիլ Կիլիկիայի մէջ՝ Հայք միտեցան դէպ ի այդ կողմը. մոռացան Բիւզանդիոնը իւր բոլոր շարժումներով, իւր բոլոր ձկտումներով։ Նոր տարրը աւելի զօրաւոր, աւելի փայլուն էր. նոյն իսկ Բիւզանդիոն մնասած էր Խաչակիրներու անցքէն։ Գրիգոր Տղայ, մեծ կաթողիկոս մը, քռիլթիք վայրկեանի մէջ պաշտօնի անցած էր. Թողուց հոռումները, հետևեցաւ արքունիքի միտումին. պէտք է բարեկամանալ պապի հետ, որ ինքն Հռովմ նստած՝ բանակներով Կիլիկիա կ՚մտնէր. պապը ահագին ոյժ մ՚էր քաղաքական, բայց կրօնական զգանակով լարուած։ Այդ ոյժը Քրիստոսի անունով Փոքր-Ասիան կ՚յեղաշրջէր ջլատելով մսլիմական յառաջացումները։ Քրիստոնէութեան համար հրաշալի երևոյթ մ՚էր այս։ Ամբողջ Փոքր-Ասիա մսլիման պիտ՝ ըլլար եթէ Սալահատտին չհաշտուէր Խաչակիր դրօշներու հետ։ Հայ արքունիքն՝ քրիստոնեայ ոյժ մը Կիլիկիայի մէջ՝ ոչ միայն օգնեց այդ խաչակրութեան սովատանջ

մէկ ճիւղին, այլ ուզեց իրապէս բարեկամանալ, կապուիլ անոնց և ընդարձակել իւր ոյժը։ Այս բարի կամքը բաւական չէր սակայն. խաչակրութիւնը վարող կեդրոնը չպիտի բաւականանար այդ չափով. Նա իւր եկեղեցիին ուժով կ'գործէր, իւր Նախապաշարումն ունէր և կուզէր որ հայ արքունիքը այդ ճամբով բարեկամանար իրեն հետ։ Հայոց կաթողիկոսը չէր կրնար թողուլ հայոց թագաւորը, տեսնել անոր տկարացումը, ստիպողական պէտք մը կ'զգար օգնելու անոր քաղաքական ձեռնարկներու յաջողութեան համար։ Ամենայն ազատամտութեամբ կ'գիջանէր։ Այս սկզբունքով գործեցին արքունիքն ու եկեղեցին։ Եկեղեցին, սակայն, գործեց միշտ խոհեմ, զգոյշ. արքունիքը ազատ էր գրեթէ այդ Նրբութիւններէն։

Ահա այն ճշգրիտ ուրուագիծը, որուն վրայ կարելի է շինել հայոց եկեղեցիին յոյն և լատին եկեղեցիներու հետ ունեցած միութենական յարաբերութիւններուն պատմութիւնը, որուն մակարդակային ուսումնասիրութիւնը թիւր և հակապատմական հետևանքներու կ'առաջնորդէ մըտքերը։

Բիւզանդիոնի և Հռոմի հետ հայոց ունեցած շփումներէն շատ քիչ տպաւորութիւն յառաջ ե-

վկաւ։ Եթէ պատմական տեղիքներու (զուտ կրօնական գրչէ ելած) վրայ հիմնուենք և ուռուցիկ ասացուածներով շլանանք, պէտք էր սպասել որ ամբողջ Կիլիկեցի քրիստոնեաները կամ յոյն կամ լատին եղած ըլլային այժմ, կամ թէ մասամբ յոյն և մասամբ լատին։ Այդ ինչ զօրեղ հոսանք մը և ճիգ՝ նախ Բիւզանդիոնէն և յետոյ Հռովմէն։ Իրողութիւնը չը ստեր սակայն. Կիլիկեցի քրիստոնեաներուն ամենէն չնչին մասը կ'կազմեն այսօր այդ եկեղեցիներու հետևողներ։ Հիմայ ուրիշ եկեղեցի մը կայ բաւական ստուար հետևողներով։ Բողոքական եկեղեցին է այդ, որուն փորձը կարելի է երրորդ նկատել պատմական դասաւորութիւնով Յոյն և Լատին փորձերէն յետոյ։ Այսօր յայտնի է, որ բողոքականութիւնը յաջողած է Կիլիկիայում (իմանալով կաթոլիկական թէմերու սահմանը) և քիչ շատ տեղական նկարագիր մը կ'կազմէ։ Ամերիկա այս յաջողութիւնը չպարտեր Բիւզանդիոնի կամ Հռովմի ի գործ դրած միջոցներուն. միջոցներ՝ որ յաջողութիւն չտուին այդ միջնադարեան սկըզբունքներու գործադրութեան։ Բողոքականութիւնը մտաւ Կիլիկիա. իւր յարաբերութիւն ուղղակի ժողովուրդի հետ եղաւ. քաղաքական տեսակէտներ չկային։ Յոյներ, խաչակիրներ վանք շինեցին, մեր արքունիքէն կնդուղ առնողներ

անգամ եղան. Ամերիկացիներ դպրոց, հիւանդանոց, եկեղեցի շինեցին. օգնեցին նեղ օրերում. հրդեհի, սովի և այլ պատուհասներու դէմ կռուեցան։ Ասոնք շինիչ, հրապուրիչ միջոցներ են սակայն։ Բողոքականութեան բուն յաջողութիւնը բանաւոր է աւելի կիլիկեցիներու ընդհանուր կրօնական դիրքին մէջ փնտռել։ Կիլիկեցիներ և Կիլիկիայի սահմանակից հայաբնակ տեղեր տեսակ մ'ազատամտութիւն ժառանգել են կարծես. պատմական է այս. յարմարելու, ընտրելու միտում մը, պատրաստականութիւն մը կայ ատոնց մէջ։ Կիլիկիայի դաշտային բնակիչներն աւելի խիզախ են այս պարագայում, Տաւրոսի բնակիչները՝ ո՛չ. բայց անոնք ալ երբ միանգամ փարին նորութեան մը, եթէ ոչ անկարելի՝ գոնէ դժուար կ'լինի ուծացնել զանոնք իրենց ընդգրկած գաղափարէն կամ գոյացուցած համոզումէն։ Պէտք է ըսել որ խիստ ընդդիմութեան բաղխեցաւ բողոքականութիւնն իւր մուտքին ժամանակ, այսինքն՝ գրեթէ կէս դար յառաջ. բայց այդ ընդդիմութեան մէջ կարծես միսիօնարներ տեսան ապագայ բեղմնաւորութիւն մը։ Կիլիկիայի բողոքականութիւնը լաւ է. մանաւանդ ա՛յն օրէն ի վեր, յորում սկսաւ իւր տեսակ մը ազատութիւնը (վիճելու, արհամարհելու) թոթուել. այսինքն՝ բո-

ղոքական նորութիւններու մոլեռանդութիւնը մէկդի թողուլ. սիրել ազգը, հայ ըլլալ, քիչ մ'անդրադառնալ իրենց հին եկեղեցիին վրայ, վերջապէս կամաց կամաց ելլել միսիօնարական ճնշումի տակէն և այլն։ Այս երևոյթը դիտելու է բողոքականութեան զարգացած ուրիշ կեդրոններում ալ (Խարբերդ, Մարսըւան)։ Աւելի ուրախալի է տեսնել, որ վերջերս կերպարանափոխութիւն մը կ'կրէ հայ-բողոքական եկեղեցիներ Կիլիկիայում Այնթապէն սկսեալ. անոնք մօտենալ կուզեն Հայաստանեայց եկեղեցիին, ընդօրինակելով անոր արարողական և իրենց նպատակայարմար կէտերը։

Հայաստանեայց եկեղեցին ալ տեղական նըկարագիր մ'ունի Կիլիկիայի մէջ։ Ժողովուրդն որչափ ալ չզարգացած՝ սակայն կատարեալ յարգանքով և միանգամայն զարմանալի ազատամտութեամբ կ'վարուի իւր եկեղեցիին հետ. խորին քրիստոնեայ մը, բայց ոչ սարսափող եկեղեցիէն։ Տաճիկ լեզուն ընդհանրապէս, մանաւանդ դաշտային Կիլիկիայում և Տաւրոսի մէկ մասին մէջ կ'տիրէ մեր եկեղեցիներում. քարոզը միշտ, ճաշու աւետարանը, ընթերցուածներ դրեթէ տաճկերէն պիտ' ըլլան. Թարգմանիչ քահանաներ յարգի են։ Գրաբարը անմատ-

չելի է նոյն իսկ հայերէնախօս լեռնցիներուն, որոնց առանին խօսուածքն իսկ գիւղէ գիւղ բոլորովին կ'տարբերին։

Այնպիսի պարզութիւններ կան Կիլիկեան եկեղեցիներում, որք կ'հիացնեն. Պոլիս աւելի շատ նորութիւններ ունի քան Կիլիկիան։ Բաւական է յիշել Աւագ ուրբաթին Թաղումի Թափոր կազմելու, շրջեցնելու սովորութիւնը. օտար, բոլորովին հակառակ օրուան յիշատակին բնութեան և նոյն իսկ Տօնացուցին։ Այս տգեղ նորութիւնը չունին կիլիկեցիք։

Դիտելու երևոյթ մ'է քահանայութեան դիրքն ալ. ազդեցիկ, գործօն, նոյն իսկ իրենց ամենէն տգէտ վիճակին մէջ։ Անոնք կ'խօսին, կ'քարոզեն, ամեն ինչ են եկեղեցիի համար։ Քահանայութեան յարգը, զօրացումը Կիլիկիա գիտցած է ճանչել։ Ձեղծում չպիտի նկատեմ վարդապետներու իրական չգոյութիւնը, որովհետև անձամբ կ'գտնուին, քանի որ քահանաներն են որ կ'վարեն եկեղեցիները։ Միայն թէ հասնէր ըստ ինքեան ցանկալի վիճակի մը. քահանայութեան այդ վիճակին բարձրացումը պիտի պայծառացնէ Հայաստանեայց եկեղեցին ամեն տեղ. բայց ամենէն յառաջ նոր զարկ մը պէտք է Կիլիկիայում, ուր դիրք մը կայ արդէն քահանայի համար։

Կիլիկիայի հայեր շատ յառաջ գացին վերջին 20—25 տարիներու մէջ. բայց տնտեսական վիճակն, որ ամբողջ Թուրքիան կ՚ահարբեկէ, տագնապեցուցիչ քան մունի Կիլիկիայի համար։ Այս երկիրը շատ պանդուխտ չհաներ հացի խնդրին համար, որչափ կ՚հանէ Հայաստանը։ Երկրին բոլոր զարգացումը, բուն արուեստներ, քրիստոնեաներու, մանաւանդ Հայոց ձեռքն է. վաճառականութեան մէջ, որ Կիլիկիայի համար մեծ նշանակութիւն ունի, նշանաւոր հայ ձեռքեր կ՚գործեն։ Տոկնութիւն, զարգանալու յատկութիւն, չափաւորութիւն, խնայողութիւն բարայուցական ընդհանուր գծերն են կիլիկեցիներուն՝ Տաւրոսի բարձունքներէն սկսեալ մինչև Միջերկրականի եզերքը։ Այս յատկութիւններն այնքան ազդեցին և ցոլուն եղան որ չափաւորեցին նոյն իսկ տաճիկ հասարակութեան բարքերը։ Այս երևոյթը դիտելի է մանաւանդ կարևոր և հայաշատ քաղաքներում, ուր անվիճելի կերպով 15—20 տարիներէ ի վեր հայ և տաճիկ հասարակութիւնները հաշտ էին իրարու քաղաքացիական կեանքի պայմաններում, և միայն վերջին ծանօթ դէպքը վերածեց զանոնք իրենց առջի անտանելի բարքերուն. դէպք մը՝ որ նոր էջեր աւելցուց հայոց պատմութեան, մանաւանդ Կիլիկիայի պատմութեան մէջ։

Հայերու կրթասիրութիւնը հաւասար է և աւելի՝ իրենց ջերմեռանդութեան. վեց, երեք եկեղեցի ունեցող քաղաքներ, գիւղաքաղաքներ կան (Զէյթուն, Մարաշ, Ատանա). այսօր անոնց քով դպրոցներ ալ կառուցուած են։ Կրթական ծախքը, ինչպէս եկեղեցականն ալ, իրենք կ'հայթայթեն. դուրսէն օգնութիւններ չեն համներ. միայն Միացեալ ընկերութիւնն է որ՝ Հաճընի և Զեյթունի կրթական կեանքին հսկեց, բարձրացուց։

Հայերու համար բնիկ է կրթասիրական զգացումը, և Կիլիկիայի մէջ պատմական է այդ. Ռուբինեանց լաւադոյն և ամենէն գերազանց յիշատակներէն մին է անշուշտ գրքի և դրչի սէրը, տաք ձկտումը։ Պէտք է սակայն խոստովանել որ հայեր (Կիլիկիայի) մրցումի կ'պարտին իրենց վերջին զարկը. միսիօնարներու ձեռնարկները պէտք էր հակակշռել. այդ քաջութիւնն ունեցան Կիլիկեցիներ և անշուշտ կ'դերազանցէին, եթէ համգուցեալ Մկրտիչ կաթողիկոսը, որուն վրայ անսպառ համարում մը կեդրոնացուցած էին թէ տեղացիներ և թէ ուրիշներ, մշակէր Կիլիկիայի զարդացումը։

Երկրին ամեն տեսակ պահանջները, թէ կլիմայի ազդեցութեան տակ, թէ այլևայլ ցեղերու հետ շփումով, մտաւորական մասնաւոր

յատկութիւններ տուած են Կիլիկեցիին. սրախօսութիւն, արագ ըմբռնում, հեռատեսութիւն, քաջութիւն, անկախութեան ոգի բարձունքներու վրայ այն յատկութիւններն են, զորս կրթութեան ձեռքով ներշնչել շատ երկար ժամանակ պիտի գրաւէր. բայց բնական են ասոնք Կիլիկիայի համար։ Եթէ երկիրը անուն մը պահած է Ռուբինեանց վերջացումէն յետոյ, հայոց կ'պարտի զայն։ Ո՛չ մէկ ժողովուրդ կրնայ վերաշինել այդ երկիրը, մանաւանդ տնտեսագիտական տեսակէտով, եթէ ոչ հայեր. տիրող տարրերէն տաճիկը անստակ է միտք յոգնեցնելու. լեռնցիներ բաւական կ'համարին զէնքն ապրելու համար։ Թիւրքմէնը, քիւրտը կ'կողոպտէ, տաճիկը կոշտ արհեստներով և միտք չըզբաղեցնող գործերով կ'զբաղի. շատ քիչ է բացառութիւնը։

Կիլիկիայի կրած հարուածն անցեալ տարուան վերջերը՝ դժուար և տնտեսական ամենէն վատ կացութեան մը մատնեց ժողովուրդը, հայը։ Կեանք, ինչք, պատիւ անգթօրէն բռնաբարուեցաւ։ Ինչպէս Հայաստանին բնակիչներն, նոյնպէս Կիլիկիայինը, երկար խաղաղութեան մը և կատարեալ ապահովութեան մը պէտք ունին միայն իրենց կորուսած վիճակը

դառնելու համար, որ արդէն գոհացուցիչ չէր։

Դիտելու է, սակայն, այս նիւթական անկումի մէջ բարոյական բարձրացումը։ Այսպիսի սև ամպեր, որ շատ անցան հայ կեանքի գլխէն, Կիլիկիայի արդի սերունդին համար պատմական զգացում մէր լոկ այդ. այժմ փորձով հասկըցան անոնք և զգացին թէ ինչ կ'արժէր իրենց հայութիւնը։ Իբր հայ քրիստոնեայ զոհեր տալ դեռ այսպիսի դարու մէջ և այդ մոլիման մոլեռանդութեան մը հանդէպ, քստմնելի է. բայց այս վիճակը ներքնապէս զօրացուց հայը. այսօր ազգային կապը կրօնական կամ եկեղեցական ամէն խտիր վերուցած և ի մի ձուլած է հայերը։ Բարերար արդիւնք մը ազգային և զուտ բարոյական ոգիով յառաջ եկած, զոր պէտք է մշակել տևական ընելու համար։

## Գ.

*Կիլիկեան կաթողիկոսութիւնը.— Երկու շրջաններ. Աթոռին դիրքը.— Արդի վիճակը:*

—

Կիլիկիայի մէջ հայոց կաթողիկոսութիւնն երկու շրջան ունի. մին Գրիգոր (Բ.) վկայասէրէն կ'սկսի մինչև Գրիգոր (Թ.) Մուսաբէկեանց

(Ծամնդաւ, Սեաւ լեռ, Հռոմ—Կլայի, Սիս. 1065 —1440)՝ Ընդհանուր կաթողիկոսութիւն, միւսը Մուսաբէկեանցէն մինչև հիմայ՝ Մասնաւոր կաթողիկոսութիւն։

Առաջին շրջանը շատ կարևոր է մանաւանդ մատենագրական տեսակէտով։ Մեր մատենագրութեան Արծաթի դարն իր փայլը կ'պարտի գրական ընդմնաւոր մշակութեան մը։ Այս շրջանի կաթողիկոսներուն մեծագոյն մասը՝ ամենն ալ նշանաւոր անձնաւորութիւններ՝ գրական մշակներու խումբ մը կ'կազմեն (Վկայասէր, Շնորհալի, Տղայ, Յակոբ Ա. Անաւարզեցի և այլն և այլն)։ Տաւրոսի և Սեաւ լեռան վանքերուն (Սկեռայ, Ակներ, Դրազարկ, Զուղր, Մաշկևոր, Կարմիր վանք և այլն և այլն) հռչակը այդ ժամանակամիջոցում իրական հնչում մ'ունէր, իսկ վարդապետներ (Ստեփանոս Մանուկ, Լամբրոնացի, Սկեռացիներ, և ուրիշ հարիւրաւորներ) կուսակրօնութեան պարծանքն և գրականութեան պատիւն էին։ Ժամանակի գիտութիւններուն կեդրոն եղան այն վանքեր, որոնց հետքը հազիւ մնացել է այժմ։

Գահն ու Աթոռը իրարու զօրավիգն եղած ուսումնական կեանքի յարգը բարձրացուցին. չափազանցութիւն չլինիր երբ ըսենք թէ գիրքի և գրչի մշակներու ասպարէզ մէր Կիլի-

կիան և հայ եկեղեցիի պաշտօնէութեան փառաւոր մի ժամանակամիջոցը՝ կաթողիկոսութեան այս առաջին շրջանը։ Իրողութիւն մ՚է այս, զոր ա՛յդ դարուն մէջ ալ գիտցած են գնահատել. «Պանխեալ վերստին ոլորվ ի տեղի իմաստասիրաց եւ ուսումնասիրաց յերկիր Կիլիկիոյ, որոյ Քրիստոս պահապան կանգնի և պատսպարէ աջովն իւրով» (Սիսուան էջ 224)։

Ռուբինեան թագաւորներ (Լեւոնեանք և Հեթումեանք) և սպարապետներ ալ (Սմբատ Գունդստապլ) դրական անձնաւորութիւններ ունեցան իրենց մէջ, երևոյթ մը զոր կարելի չէ ուղղակի մատնանիշ ընել հայ Արքունիքի նախորդ ժամանակամիջոցներում։

Լեզուագիտութիւնը անվիճելի կերպով ընտիր ներկայացուցիչներ ունեցաւ. Եւրոպայի հետ յարաբերութիւններուն անհրաժեշտ պահանջն էր այդ։ Կիլիկիայի կաթողիկոսութիւնն աւելի մօտ Բիւզանդիոնի և Եւրոպայի բնականօրէն զարկ տուաւ գրչի գործունէութեան. մրցում կար հայ և ուրիշ վանականներու և եկեղեցականներու մէջ։

Սիսը գաղափարուած գրքերու ահագին արտագրութիւն ունեցաւ. անոնցմէ մեզ հասածները հազիւ հարիւրէն մէկն է։ Մենք չենք

կրնար ճշտել թէ որչափ հեղինակութիւններ ալ փչացան անոնց հետ։

Երկու գլխաւոր արուեստ՝ գրչութիւն (ուսկելն ու նկարելն ալ միասին) և երաժշտութիւն գերազանցապէս մշակուեցաւ Կիլիկիայի մէջ։ Հայ մատենադարաններ իրենց ձեռագիրհարստութեան շատ թանկագին մասը Կիլիկեցի գրիչներու կ'պարտին։ Ստեփանոս Գոյներ Երիցանց պէս գաղափարողներու, Սարգիս պիծակի պէս ոսկողներու մօտ՝ Կիլիկիան Ալիծներ ալ ունէր իբր ճարտար գրիչներ։ Գրասէր արքունիք, գրասէր հայրապետանոց և հայրապետներ ամեն պաշտպանութիւն ըրին գրական մշակութեան ճիւղերու համայնքին։

Ասոնց յարգը կ'բազմապատկուի երբ նկատի առնենք այն ժամանակը, որ գրեթէ հանգստութիւն չունէր։ Ներքին խռովութիւններ, արտաքին յարձակումներ անընդհատ էին գրեթէ. կեդրոնական տեղեր սակայն, Սիսի վանքէն սկսեալ մինչև Տաւրոսի նշանաւոր վանքերը, բնական ամրութեան մէջ ամուր բռնեցին թուղթըն ու գրիչը։

Կիլիկիայի այս շրջանի կաթողիկոսական իշխանութիւնն ընդհանրական էր. գրական և եկեղեցական շարժումներ եռանդուն էին. Արևելեան վարդապետներ անտարտունջ չմնացին

աստոնց հանդէպ․ կաթողիկոսներն անարգելու չափ յառաջ գնացին։ Եւ Արևելքի մէջ Բարսեղ կաթողիկոսի ընտրութիւնը (1082) կաթողիկոսական աթոռներն աստ անդ շատցնելու առիթ տուաւ։ Կիլիկիայի կաթողիկոսարանին դիրքը քաղաքական երկրում՝ նշանակութիւն չունեցաւ արևելեան վարդապետներու համար․ ա՛յս է պատճառն որ անոնք խիստ և յանդուգն եղան կաթողիկոսներուն առջև։ Այդ խնդիրը մեծցաւ հետզհետէ․ ո՛չ Լևոնի արքունական ընծաներն արևելեան եկեղեցիներու, ո՛չ կաթողիկոսներուն արևելեանները շահելու տրամադրութիւնը կրցան Տուտէորդիները բերել մտածելու, դիտելու ա՛յն նրբութեան, որով միայն կարելի պիտ’ ըլլար Կիլիկիայի կաթողիկոսարանն ըմբռնել։

Դժբաղդաբար Ռուբինեանց տկարացումը հետզհետէ եթէ ոչ կասեցուցին, գէթ սահմանափակեցին բոլորովին Կիլիկիայի գրական յառաջդիմութիւնն և կաթողիկոսարանն անպաշտպան մնացած արտաքին յարձակումներու հանդէպ, բազմապատկեց արևելեան վարդապետներու տրտունջը։ Կիլիկիան դժուար և շատ դըժուար կացութեան մը մատնուեցաւ․ այս կողմէն ալ տրտունջներ բարձրացան և հետե-

ւանքն եղաւ Կիրակոս Վիրապեցիին ընտրու-
թիւնը (1441)։

Մուսաբէկեանց մնաց Կիլիկիայի մէջ. Կի-
լիկիա՛, որ իւր փառքի ստուերներուն տակ
լքուած էր։ Կիլիկիայի համար այստեղ կ’սկսի
կաթողիկոսութեան երկրորդ շրջանը. պատ-
մական նշանակութիւն ունեցող շրջան մը։

Էջմիածին և Սիս լաւ աչքով չդիտեցին զի-
րար երկար ժամանակ. պարբերական կռիւներ
բաւական տխուր դէպքերու ծնունդ տուին. ցա-
ւալի է այսպիսի երևոյթներ մանաւանդ մեր
պատմութեան մէջ. պէտք չէր որ տեղի ու-
նենային այսպիսի դէպքեր։ Ինչ և է, այդ
կռիւներ տեսակ մը մրցում եղաւ երկու կողմի
համար ալ, գէթ գործունէութիւն պահելու հա-
մար երկու կենդրոններուն մէջ. այնպէս որ երբ
մին տկարացաւ տիրապետողներու քաղաքական
վրդովումներուն մէջ, միւսը զօրացաւ։ Այս
փոխն ի փոխ վիճակը հետաքրքրական իրողու-
թիւն մ’է։

Հակառակութիւններու, կռիւներու պատ.
մութիւնը չպիտ’ ընեմ։ Աւելի նշանակութիւն
ունի ա՛յն հասկացողութիւնն, որ մերթ ընդ
մերթ ցուցին երկու կողմէն ալ ի վեր հանելով
երկու Աթոռներուն *կարեւորութիւնը*։ Այդ հաս-

կացողութիւնն անվիճելի համոզում մ'եղաւ մնացեալ քառորդ դարէ ի վեր։ Եթէ սկիզբէն փոխանակ հակառակութիւններու՝ տիրէր անընդհատ բարեկամութիւնը, կշռուէր երկու կեդրոններուն ալ դիրքը մեր ազգային կեանքի տեսակէտով և այլն, այսօր տարբեր վիճակի մը մէջ պիտի տեսնէինք Կիլիկիան։

Կիլիկիայի Աթոռին կարևորութիւնը կ'շեշտուի այն զօրաւոր պատճառներով, որք հետզհետէ իրարու վրայ կ'բարդուին։ Ամենէն հակակիր անձեր այսօր տրամաբանական միտում մը կ'ցուցնեն և բարի կամք մը։

Պէտք է խոստովանիլ որ ունեցանք այդ Աթոռին վրայ այնպիսիներ, որք յուսահատեցուցին, ցամքեցուցին համակրանքի ամենէն յորդ աղբիւրները։ Աթոռին դիրքը, պէտքը սակայն միշտ բարձր մնաց անարժաններու գործերուն մէջ ալ։ Պէտք է խոստովանիլ դարձեալ որ շատերու կողմէն կոյր հակակրութեան մը, լաւ ևս, կոյր հետևակութեան մ'արդիւնքն էր հակառակիլ երկրի մը կեդրոնին դէմ, որ նշանակութիւն մ'ունի պատմական և միշտ պիտ' ունենայ...։

Այդ երկրին կարևորութիւնն ըմբռնելու համար մէջը մտնել պէտք է։ Հայը շրջապատող տարրերը, հայ ժողովուրդին մտաւորական և

տնտեսական վիճակը, միտումները դէպ ի ուսումը, դէպ ի ազգը, դէպ ի եկեղեցին, քաղաքէ քաղաք, գիւղէ գիւղ տիրող բարքերու զանազանութիւնը, լեզուն, անոր ցրուածութիւնը Կիլիկեան հողի վրայ, այն, այս ամենը, թող տարօրինակ չերևի, ուսումնասիրել, շատ մօտէն գիտնալ միակ պայմանն է Կիլիկիայի կեդրոնին դիրքը գնահատելու համար։

Ո՛չ Էջմիածին, ո՛չ Կ. Պոլիս կրնայ կառավարել Կիլիկիան և այս շատ յայտնի և շատ զօրաւոր պատճառներով. որոնց մի քանին արդէն բացատրեցի անցեալ տարի *Արեւելք* օրագրի (1895 Յունուար 4) ընթերցողներուն։ Այստեղ կ'շեշտեմ միայն Կիլիկիային տեղագրական դիրքը, ամենէն բնական պատճառը։ Կիլիկիա իր մէջ պէտք է կառավարուի. Տաւրոսի բարձունքներու վրայ և ծմակներու մէջ անկարելի է լսեցնել այն ձայնը, որ Էջմիածինէն կամ Կ. Պոլսէն կուգայ։ Բայց Էջմիածին, Սիս, Կ. Պոլիս պէտք է միանան *իրապէս* և ո՛չ *պաշտօնապէս*. պէտք է ճանչեն իրարու դիրքն ու պէտքը և այս ամենէն խիստ պայմաններու մէջ. ճշմարիտ համերաշխութիւնն այս է, զոր իրականացնելու համար բաւական է որ գահակալներ միայն և ուղղակի ժողովուրդը դիտեն։ Այս ըմբռնումն ունեցողներ, քաղաքագէտ գլուխ-

ներ չպակսեցան թէ Էջմիածնի և Սիսի կաթողիկոսներու և թէ Կ. Պոլսի պատրիարքներու շարքում։ Ասոնցմէ, իբր վերջիններէն, կ՚նշանակենք Աշտարակեցիէն մինչև հիմայ Մայր Աթոռի կաթողիկոսները, բաց ի Գէորգ Դ. էն, և Կիլիկիայէն մեծն Կիրակոսը (Ա.)։ ասոնք շատ անկեղծօրէն և շատ լաւ հասկացողութեամբ գիտեցին գիրար և գործեցին։ Իսկ պատրիարքութիւնը բոլորովին Կիլիկեան սէր մ՚ունէր սկիզբէն ի վեր, իբր երբեմնի թէմը Կիլիկիային. այնպէս որ Կիլիկիայի կաթողիկոսներէն պատրիարք և պատրիարքներէն Կիլիկիայի կաթողիկոսներ եղան։ Եւ ժողովուրդի հասկացող դասու գաղափարին իբր կեդրոն կ՚շեշտեմ Օտեանի և Օտեաններու համոզումը։ — Վերջին հակակրութիւնները պատրիարքարանի և Կիլիկիայի մէջ Գէորգ Դ. ին հետ ուղղակի արդիւնքն է հանգուցեալ Նիկողոս (Կիրակոս Գ.) և Մկրտիչ կաթողիկոսներու սխալ քայլերուն և Գէորգ Դ. ի տարապարտ ձկտումներուն։

Կիլիկիայի կաթողիկոսութեան դիրքը ամենէն յառաջ Կիլիկեան եկեղեցականութիւնը պէտք էր հասկնար և այս ոչ թէ կուրօրէն յամառումով։ Դժբաղդաբար չկայ այդ հասկացողութիւնը. եպիսկոպոսներ, բաց ի քանի մը բացառութենէ, միայն կոյր փառասիրութիւն

մ՚ունին և ոչ ուրիշ բան. ատոնք դատալիքներ էին Երուսաղէմէն և Աթոռը կ՚ճանչէին մինչափ որչափ կարելի էր սողոսկել եպիսկոպոսանալու համար։ Այս խորին տգիտութիւնն էր որ նոր կնճիռներ յառաջ կ՚բերէ. ցաւալի խլողութիւն մը...։

Կիլիկիայի կաթողիկոսութեան երկրորդ շրջանը չունեցաւ Առաջինին գրական փայլը։ Քաղաքական անկումի և յաջորդող անհանգիստ ժամանակներուն բնական հետեւանքն էր այս. թէև նշանաւոր դէմքեր չպակսեցան կաթողիկոսներու շարքին մէջ (—ինչպէս Կարապետ կլթ. նոյն իսկ Վիրապեցիէն եպիսկոպոսացած, որ Մուսաբէկեանէն յետոյ առաջին կանգնողն եղաւ Աթոռին, իւր յաջորդն Ստեփանոս, հանրածանօթ Թլկուրանցին (Յովհաննէս Ա.), Կայծակը (Յովհաննէս Գ.), Ազարիա, Տիրատուր (գիտնական), Բարեբարոյ (Յովհաննէս Դ. Այնթապցի՝ պատմագիր)։ Սիմէոն և Ներսէս Սեբաստացիներ, Գրիգոր (ուլուբլու), Աջպահեաններէն Եփրեմ (պատմագիր Աջպահեանց), Կիրակոս Ա. կաթողիկոսներ —), բայց անկարող էին անոնք խռոված ժամանակի մը մէջ գործել։ Գերութեան, բանտի մէջ մաշած թունաւորուած և նահատակուած անձնաւորութիւններ կան անոնց մէջ. իրենց բոլոր ոյժը Սիսի՝ կենդրոնա-

կան վանքին պահպանութեան նուիրած էին։ Այս դժբաղդութիւններու հետեւանքով ուրիշ վանքեր ալ փակեցին իրենց դռները գիտութեան հանդէպ. Աւերակը պիտի տիրէր գիրքի գրչի տեղ. տգիտութիւնն ընդհանուր խեղճութիւն մ'եղաւ. այսօր բան մը չունինք անցեալի փառքերէն, միայն պատմութիւնն անոնց և զգացում մը որ խաղաղ միջավայր կ'ուզէ բարգաւաճելու համար։ Գէթ երեք դար յառաջ Կիլիկեցի կաթողիկոսներ դեռ նախորդ շրջանի իրական արդիւնքով կ'պանծային, «Սաղմոսն ի Մշայ եւ խազն ի Սսայ» առածով, որ ամբողջ խտացումն է Կիլիկիայի երաժշտական յառաջդիմութիւններուն։ Մենք ցաւ մ'ունինք այժմ, ո՛չ միայն անոնց ստուերն ալ չունինք, այլ մանաւանդ չունեցանք դեռ այդ բանը հասկացող մը։ Թո՛ղ Սեաւ լեռան վանքերը, թո՛ղ ուրիշ ամեն բան, Սիսն անգամ, որու պահպանութեան հին կաթողիկոսներ արիւն թափեցին, չէ պահած նշոյլ մ'ալ հին պարծանքէն։ Ո՛չ Մատենադարան, ո՛չ ձեռագիր, որ «Սսու» անունով հռչակուած էին, ոչ չէնք, ո՛չ Դիւան, ո՛չ գրիչ, ոչ երաժիշտ և այլն, իրական ամայութիւն մը։ Ամայութիւն մը, որուն տակ ժողովուրդի յոյս մը կայ ծածկուած։

Մարդ հրճուանքով կ'դիտէ սակայն յառաջդիմական զարթնում մը ժողովուրդի մէջ 20—25 տարիներէ ի վեր յուսալից և արդէն արդիւնաւոր է ա՛յս յառաջդիմութիւնը։ Հայերէն լեզուն, որ մասնաւոր կաղապար մ'առած է Կիլի-

կեցիներուն բերնին մէջ, վայրագ ստիպումներու
ներքեւ սկսած էին չգործածել ժամանակ մը և
այդ ժամանակը դեռ պատանիներ կ՚յիշեն յորում-
Կիլիկեցիներու լեզուները ծայրատուած են՝ մա՛ւ
նաւանդ դաշտային Կիլիկիայի մէջ խափանե-
լու համար հայերէնախօսութիւնը. ա՛յս է պատ-
ճառն որ Կիլիկիա տաճկախօս երկիր մ'է ե-
ղած։ Բայց այսօր երիտասարդութիւն մը կ'բող-
բոջի այնտեղ՝ կրթուած, հայ լեզուով և սրտով։
Այս զարթնումի հանդէպ պէտք էր մոցել ե-
կեղեցականութիւնը. շատ փայլուն շրջան մը
պիտ' ըլլար այդ և աւելի կարևոր քան Արծա-
թի դարը, ամբողջ ժողովուրդը պիտի լուսաւո-
րուէր։

Զարմանալի թո՛ղ չթուի։ Կիլիկիայի մէջ
կաթողիկոսութեան աջակցութիւնը կրթական
գործին՝ անհրաժեշտ է. ա՛յնտեղ կաթողիկոս-
ներ այս երկար շրջանում բոլոր Տաւրոսն ոտ-
քի հանելու չափ հեղինակութիւն մը շինած էին։
Աջպահեան վերջին կաթողիկոսներու պատմու-
թիւնը ծանօթ է, և դեռ գրեթէ կ'տիրէ այդ
հեղինակութեան կախարդանքը։ Ճնորհքով կա-
թողիկոս մը հրաշք պիտի գործէ գլուխ կանգ-
նելով ժողովրդական բարձրացումի։ Նախորդ-
ներ թիւրքմէն գլխաւորներու հետ դաշնակցած
անկախ պահեցին Տաւրոսը։ — Մկրտիչը մեռցուց
Կիլիկիան և իւր ձարի պտուղներն՝ եպիսկոպոս
ըսուած արարածներ կհոտեցնեն. բայց Կիլի-
կեցիներ չպիտի ներեն ալ. չպիտի ներեն ա՛լոր
տգէտ, մառաուէր, ինքնակոչ եկեղեցականներ

իրենց՝ Կիլիկեցիներուն՝ հետ խաղ խաղան.— Նորեր կրթութեան հերոսներ պէտք է ըլլան։ Մենք սոոր կը սպասենք։

Կիլիկիայի կաթողիկոսութեան թեմերուն սահմանը սեղմուած է հիմայ, (յառաջ մինչև Կ. Պօլիս, Երուսաղէմ Կիպրոս կ'տարածուէր։ Առաջին շրջանի կաթողիկոսութիւնը 5 հաստատուն արքեպիսկոպոսական կեդրոններ և 18—20 եպիսկոպոսարաններ՝ Առաջնորդութիւն՝ կ'հաշուէր. այդ թիւերը շատ չփոխուեցան գրեթէ մինչև երկրորդ շրջանին վերջերը. այժմ հազիւ 9 կամ 10 Առաջնորդութիւն ունի, որք Ատանայի և Հալէպի վիլայէթներում տարածուած են. այսինքն՝ Ատանայի վիլայէթը ամբողջ, Հալէպէն՝ բուն Հալէպ (Բերիա), Այնթապ և Անտիոք իրենց շրջականներով Կիլիկիայի արդի թեմական սահմանը կը կազմեն). լայն ասպարէզ մը կայ սակայն գործելու այդ սեղմ սահմանի մէջ և բեղմնաւոր ասպարէզ մը։

Կաթողիկոսութիւնը Կիլիկիայի մէջ այնչափ կարևոր է որչափ անոր՝ Կիլիկիայի՝ ազգային նշանակութիւնը։ Մեր ազգին համար Կիլիկիա միշտ իրական կեդրոն մ'է իւր համայնքով, պէտք է զարգացնել։

Աթոռներու համերաշխութիւնը, իրական օժանդակութիւնը և մէն մի հայու համակրանքը ամենէն ընտիր միջոց մ'է բարձրացնելու համար երկիր մը, ուր այժմ ամենէն յառաջ հայ ժողովուրդ մը կայ և այդ ժողովուրդը պէտքեր ունի...։

Երրորդ ոսկի, առակ Լակիդէի բ. տպ. 1893 . — 10
Ռօբինզօն (Հրատ. Թիֆլիսի տպագր. ընկ.) 1881 — 60
Չեստէրտօնի ժառանգը. պատմ. 1882 . . . 1 —
Ակտէա, տ. Միսօեվայի 1885 . . . . . — 50
Եան Էրնստ Սմօլեար. Ն. Եանչուկի 1885 . . — 20
Արծուի մտածմունքը. պրօֆ. Մ. Բօգդանօվի 1892 — 05
Գիւղի սուրբը, Սվեատօպօլկ Չէխի, 1892 . . — 10
Կեանքի դպրոցը, Դիկկէնսի 1892 . . . . 1 —
Դէպի Աթէնք. Սենկեւիչի, 1896 . . . . — 15
Մի կտոր Հաց. Պօտապէնկօի. 1896 . . . — 10

## Գ. Հրատարակութիւններ

Իս. Յարութիւնեան. Հայոց գիրը. 1893 Տփխիս. 1 50
Իշխ. Կ. Բեհբուդեան. Ծուխ. 1893 . . . — 15
Ռանդաբէ. Էմաէ. վէպ. Թարգմանութիւն Յ. Լալայեանի . . . . . . . . . . . . — 25
Ալբեր Այնօ. Քուրդի լեառն. Թարգմանութիւն 1894 . . . . . . . . . . . . . — 25
Ղազարբէգեանց Յ. Հայոց լեզու ա. տ. դասագիրք հայ ծխ. դպր. համար 1894 . . . — 30
Սպիրի. Այծարած Մօնի. Թարգ. Իս. Յարութիւնեանց 1895. . . . . . . . . . . — 15
Բակ. Կիլիկիա. 1896 . . . . . . . . . . — 15

---

Լումայ. գրական հանդէս 1896. ա. գիրք . . 2 —
Լումայ. „ „ 1896 բ. գիրք . . 2 —

# ԼՈՒՄԱՅ

## ԳՐԱԿԱՆ ՀԱՆԴԷՍ

(ԵՐԿՐՈՐԴ ՏԱՐԻ)

*1897 թ. կը հրատարակուի երկու գիրք:*

Առաջին գիրքը լոյս կը տեսնի յունուարի 1-ին, իսկ երկրորդը՝ յուլիսի 1-ին։

*Տարեկան բաժանորդագինն է* **3** *ռ.*
*Իւրաքանչիւր գիրքն առանձին* **2** *ռ.*

*Հրատարակիչ՝* ԳԻՒՏ ՔԱՀ. ԱՂԱՆԵԱՆՑ

